զի մի՛ զայն՝ որ առնէ իրաւունս զրկելոց՝ զա̃ծ, դատաւոր և դատախազ իւր կացուցանէ, և զոր 'ի յանցաւոր կեանս զրկեաց, 'ի յանանցն վաշխիւ հատուցանէ ։

Այլ աւագագոյնքդ 'ի ձէնջ և հաստատունքդ յիմաստութի, շահեցարուք զկրսերագոյնսն և զպակասամիտսն, ներող լինելով առ նոսին և երկայնամիտ, որով և վարձս ընկալջիք յա̃յ 'ի շահել զեղբարսն ։ Իսկ կրսերագունիցդ պատուէր տամք ըղխոնարհութիւն և զհնազանդութիւն ցուցանել աւագագունիցն, և իմաստնոց քահանայիցն ։ Այսպիսի բարեկարգութի լինելով ձեր՝ անուանն ա̃յ փառաւորութեան լինիք պատճառք առ արտաքինսն, և ժողովրդեան ձերոյ՝ բարեաց նախանձու ։ Իսկ եթէ 'ի վիճմունս, և 'ի հակառակաբանութիւս և 'ի հայհոյութիւնս միմեանց տեսանեն զձեզ, յորս են բազումք՝ մանաւանդ թէ ամենեքեան՝ բայց 'ի սակաւուց, անուանն ա̃յ վասն ձեր հայհոյի 'ի տեսողացն արտաքնոց, և ժողովուրդ ձեր առաւել խոտորին 'ի պատուիրանացն ա̃յ, և զպատիժ դատաստանին դուք կրէք զթիւրելոցն ձերով պատճառաւ յուղիղ ճանապարհէ ա̃ծային օրինացն ։

Մի՛ ոք 'ի ձէնջ սիրեսցէ զկուրութիւն տգիտութե քահանայական ուսմանց յաղագս ծուլութե, կամ աշխարհական զբաղմանց ․ այլ թէ և ոչ ամենեցուն ամենայն շնորհօք կատարեալ լինել հնար է, զոր և ա̃ծային օրէնքն պահանջեն 'ի քահանայից, սակայն 'ի հարկաւորսն պարտին անթերի լինել ․ այս ինքն զեկեղեցական գիրս ուղիղ ընթեռնուլ, և զմանր ուսմունս ձայնաւորացն պաշտել յեկեղեցիս ․ և ապա գալ 'ի ձեռնադրութիւն քահանայութեան ։ Բայց լսեմք զոմանց սուտ քահանայից, զի ոչ միայն յայլ ուսմանէ են տգէտք յաղագս հեղգութեան, մանաւանդ թէ վասն անհաւատութե, այլ և զսաղմոսն Դաւթի ոչ գիտեն բովանդակ, առանց որոյ՝ զնոսին զհարիւր և զյիսունսն խօսել բերանով ընդ ա̃յ, ոչ մատչի պատարագ ըստ աւանդութեան կանոնի հարցն սրբոց ։ Ոմանք և ոչ զբանս աղօթից սրբոյ պատարագին գիտեն 'ի բե-

qui jus reddit injuste oppressis, judicem et accusatorem simul efficiat, ille autem, qui in hac vita transitoria fraudavit, cum usuris in interminabili vita solvere teneatur. Sed majores constantioresque ex vobis in sapientia juniores et ignaros lucrentur, eis parcendo eosque perferendo, quamobrem a Deo praemio afficiemini, quippe quod fratres lucrati estis. At vobis junioribus praecipimus, ut majoribus sapientibusque Sacerdotibus obedientiam humilitatèmque ostendatis; hacce enim optimâ regulâ servatâ, in causa eritis, ut glorificetur Dei nomen apud extraneos, utque bonorum operum aemulatio in vestris populis accendatur. At si vos videbunt dissentionibus, altercationibus, et conviciis unus adversus alterum occupatos, quemadmodum multi, immo, paucis exceptis, omnes agunt; nomen Dei propter vos blasphemabitur ab extraneis contuentibus, et vester populus magis a Dei praeceptis recedet; vos autem vestrâ culpâ supplicium feretis judicii quoque eorum, qui a rectâ divinae legis viâ aberraverunt.

Nemo e vobis propter socordiam, saecularesque curas caecam diligat ignaviam Sacerdotalium studiorum. Quod a cunctis praestari nequit, ut sint (*nimirum*) in omni gratiâ perfecti, quemadmodum lex divina Sacerdotibus praecipit; saltem in necessariis debent esse perfecti; libros videlicet liturgicos ac rituales recte perlegere, et cantus in Ecclesia solitos probe callere: post haec autem ad Sacerdotalem ordinationem poterunt promoveri. At de quibusdam falsis [153] Sacerdotibus audimus, quod non solum in ceteris disciplinis sunt propter socordiam, vel potius propter incredulitatem insipientes, verum ne Psalmos quidem Davidicos centum et quinquaginta capitibus comprehensos integre sciunt, quibus non utendo cum Deo [154] minime Sacrificium perficitur, juxta Sanctorum Patrum traditiones. Nonnulli ne verba quidem precationum Sancti Sacrificii me-

րան, և սուտ պատարագաւն խաբել կարծեն զանխաբելին Ա̃ծ, և զմարդիկ, և զհոգիս ննջեցելոցն, առ աչս մարդկան կեղծաւորելով. որոց դատաստանն առաւել է քան զամենայն մեղաց՝ առաջի Ա̃յ. որք և ոչ իսկ են արժանի այլ ևս մատուցանելոյ պատարագ, թէ և յետ յանդիմանելոյն առնուցուն 'ի բերան: Այլ թէ կամիցին զհոգիս իւրեանց փրկել 'ի դատապարտութենէ՝ մեծաւ ապաշխարութեամբ, թէ արդեօք քաւեսցին յառ Ա̃ծ մեղանացն:

Մի ոք 'ի քահանայից վայրապար և առանց մեծի զգուշութե̃ան կատարեսցէ զսուրբ մկրտութիւնն, իբրև զաշխարհական ինչ գործ համարելով, և մի ընդ Ա̃ծային բանիցն՝ բանս ծիծաղականս և կատակերգութիւնս խառնեսցէ, որպէս լսեմք զոմանց տգիտաց և աներկեղից՝ զի առնեն, զի մի ինքեանց դատապարտութեան լինիցի այն պատճառ, և երախայիցն անմեղաց՝ թերակատար զշնորհս հոգւոյն սրբոյ ընդունելոյ: Այլ որպէս զսուրբ պատարագն՝ այնպէս երկիւղիւ կատարեսջիք զպաշտամունսն, և զընթերցմունս Ա̃ծաշունչ բանիցն, և զամենայն կարգաւորութիւնսն սուրբ մկրտութե̃ն խորհրդոյ. և եթէ այսպէս առնիցէք՝ հաւատացէք, զի որպէս էջ հոգին սուրբ՝ 'ի վերայ փառակցին իւրոյ 'ի Յորդանան, նոյնպէս և 'ի վերայ ամենայն ուղղափառ հաւատով մկրտելոց իջցէ, զորս և յորդեգրութիւն Ա̃ծ հայր վերակոչէ շնորհօք՝ որպէս զբնութեամբ որդին, և լինիք դուք արքանեակք, և սպասաւորք հոգւոյն սրբոյ՝ յԱ̃ծարարութեանն շնորհ, մանաւանդ թէ իբրև զմանկաբարձս որդւոցն Ա̃յ, ձեռօք ձեր կատարելով և բառնալով 'ի մօրէ նոցին՝ յաւազանին ծոցոյ:

Նաև մի ոք 'ի քահանայից յետ հաց ուտելոյ՝ իշխեսցէ առնել մկրտութիւն առողջից մանկանց, բայց թէ յերկեղէ մահու: Այլ նախ կատարեսցէ զմկրտութեանն գործ, և ապա մատուսցէ զպատարագն սուրբ՝ յորմէ և զմկրտեալն հաղորդեցուսցէ: Նաև մի յանհաւատից արանց, կամ կանանց, որք ոչ են երկրպագուք Ք̃ի, առցէ ոք կնքահայր ման-

moriter tenent, et superficiali sacrificio arbitrantur decipere, qui falli nequit, Deum, et homines, defunctorumque animas, coram hominibus simulando; quod severius apud Deum prae alio quolibet delicto judicabitur. Hi autem indigni sunt offerre deinceps Sacrificium, etiamsi post reprehensionem memoriae mandaverint. Sin vero a damnatione liberare velint animas suas, magnâ Poenitentiâ peccati, quod in Deum est, veniam consequi satagant.

Nemo e Sacerdotibus perfunctorie, et sine maximâ animadversione Baptismum sanctum administret, ipsum mundanum reputans negotium; nec divinis verbis ridicula et scurrilia verba commisceat, sicut de quibusdam ignavis metuque carentibus audimus; ne ipsi id sit damnationis causa, infantibus autem causa sit imperfectae susceptionis gratiae Spiritûs Sancti. At quemadmodum sanctum Sacrificium, ita cum timore administrationem perficite, verborumque divinitus inspiratorum lectionem, universosque sancti Baptismatis mysterii ritus. Id si praestabitis, credite, quod sicut Spiritus Sanctus in Jordane descendit super Eum, qui erat ejusdem gloriae consors; ita et super omnes descendet, qui catholicâ fide baptizati erunt, quos per gratiam Deus Pater in adoptionem vocat ad similitudinem proprii sui Filii, vosque in ipsâ deificâ Spiritus Sancti gratiâ adstipulatores et ministri, immo, ut ita dicam, filiorum Dei obstetrices fitis, manibus vestris operando, atque a matris sinu, idest a Fonte, eos suscipiendo.

Nemo e Sacerdotibus Baptisma sanis pueris post prandium administret, sed instante solummodo mortis periculo. Prius Baptismatis peragat opus, ac postea sanctum offerat Sacrificium, in quo et baptizatum communicet [155]. Neque ex infidelibus viris aut mulieribus Christum non adorantibus accipiatur sponsor puerorum baptizandorum. Quomodo enim

կանց մկրտելոց. զի զոր ինքեանք ոչ ունին՝ այլում զիա՞րդ կարեն տալ, զխոստովանութիւն՝ որ 'ի սուրբ երրորդութիւնն, յորժամ պահանջէ քահանայն 'ի դէմս մկրտելոցն զդաւանութի̃ հաւատոյն ։ Վասն որոյ մի՛ տայք ոգիտաց աշխարհականաց յաղագս մարմնական '' ինչ սիրելութեան զայս առնել. և եթէ յանդգնիին՝ դուք մի՛ յանձն առնուք զմկրտելն, զի մի՛ թերի առնիցէք զայն՝ որ մկրտինն՝ 'ի կատարմանէ, և մի՛ ծիծաղելիս զմեծ խորհուրդն ա͞ծային կացուցանէք առաջի անհաւատիցն. որ թէ հնար էր՝ և ոչ միում 'ի նոցանէ արժան էր լինել մերձ յաւազանն սուրբ 'ի մկրտութեանն ժամու, զի մի՛ վասն հակառակացն ճշմարտութեան՝ հոգին սուրբ հեռասցի 'ի մկրտելոցն ։ Նա և մի՛ ոք 'ի ձէնջ ըստ հարկի պահանջեսցէ գինս արծաթոյ անգին շնորհին վասն մկրտութեանն, կամ[12] մահու հաղորդ տալոյ, այլ որ ունին և տան սիրով՝ որպէս գնուէր եկեղեցւոյ առէք, և որ աղքատ լինին՝ մի՛ բռնադատէք ։

Ասեմք և յաղագս զծնունդս այլազգեացն մկրտելոյ, որ սովորութեամբ բերի 'ի հին ժամանակաց, և է ընդդէմ հրամանին Տ͞ռի, որպէս ասաց՝ “ Ոչ տալ զսրբութիւն շանց ”․ զոր արժան էր խափանել, և ոչ թողացուցանել. զի զի՞նչ օգուտ է այլով բերանով խոստովանել զՔ͞ս, և զգենուլ զնա մկրտութեամբն՝ մինչ անբանն է և անզգայ, և յորժամ զարգանայ հասակաւ՝ մերկանալ դարձեալ ուրացութեամբն, և լինել հայհոյիչ ա͞ծային խորհրդոյ տնօրէնութե͞ նորա՝ ըստ դենին իւրեանց, փոխանակ փառաբանիչ լինելոյ ։ Որով առաւել դատաստանաւ դատելոց են յաղագս եղծանելոյ յինքեանս զտիրական պատկերն, զոր վերստին նըկարագրեաց 'ի նոսա աւազանն սուրբ, քան զամենեւին ոչ դրոշմեալսն. այլ զի գոյ 'ի նմա մասն բարւոյ, այս ինքն՝ զի 'ի մկրտելոց անտի՝ բազմաց 'ի տղայական հասակին հասանէ վախճան մահու, և այնոքիկ ոչ ընդ կորուսեալսն՝ այլ ընդ փրկեալսն արժանաւորին փրկութեան, և զի զսակաւսն զայնոսիկ յափշտակելով 'ի սատանայէ՝ խառնեմք 'ի գունդն

sanctae Trinitatis confessionem, quam ipsi non habent, dare possunt aliis, quum Sacerdos ejuscemodi professionem postulat a baptizandis? Quapropter ne relinquatis opus istud peragendum ignavis saecularibus ob terrenum pecuniae amorem. Quod si illi audeant, vos baptizare renuite, ne a perfectione deficiant, qui, ut ipsam acquirant, baptizantur, neve subsannabile coram infidelibus magnum mysterium divinum reddatis: immo, si fieri posset, nullus horum dignus foret, qui sancto fonti tempore Baptismi adstaret, ne propter veritatis oppugnatores Spiritus Sanctus a baptizatis recedat.

Nemo vestrum, quasi tributum, postulet argenti pretium pro ea gratia, quae pretium non habet, pro Baptismi nimirum aut Eucharistiae administratione morientibus; sed quasi Ecclesiae oblationem ab iis, qui habent, accipite si libenter largiantur, sin autem inopes fuerint, ne cogatis.

Dicamus et de baptizandis Infidelium pueris, quod ex antiquorum temporum more ad nos usque pervenit; quodque est contra Christi praeceptum, sicut dixit: *Nolite sanctum dare canibus*[156]; quodque impediendum erat, nec permittendum. Quid enim (*huic puero*) prodest alieno ore Christum confiteri, Eoque per Baptismum indui, dum verbis sensuque caret; postea vero, quum aetate profecerit, iterum per apostasiam Illo exui, divinumque Incarnationis ejus mysterium, juxta propriam Sectam, blasphemare, potiusquam illud glorificare? Propter quod (*Baptismum*) magis magisque prae illis, qui nunquam baptizati fuere, judicabuntur, quia in semetipsis dominicam maculaverunt imaginem, quam in eis Fons sanctus signavit. At quoniam in hoc nonnihil est boni, quia nimirum quibusdam baptizatis mortis finis advenit dum adhuc in pueritiâ versantur, ideoque non cum perditis, sed cum servatis digni efficiuntur salute, hosque paucos diabolo ereptos Christi cohortibus commiscemus; propterea haud justum, id om-

Ընդի, վասն այնորիկ ոչ իրաւունս համարեցաք զամենեւին խափանելն ։ Բայց զայս միայն վասն սորին իրի պատուէր տամք քահանայիցդ, մի վասն ագահութեան ախտի յորդորել զնոսին, և կամ յօժարութեամբ ընդունել, այլ դժուարաւ և՝ի հարկէ բերիլ յայնպիսի իրս ։ Զի թէ հաստատուն մնալոց էին 'ի հաւատս՝ բարի էր յորդորումն և յօժարութիւնն ձեր. բայց զի ապրեալքն ըստ մարմնոյ՝ անդրէն ընդ ջուրսն են անցանելոց, և'ի լուսակիզն յօդեաց՝ 'ի սևութիւն այծից փոփոխելոց, ըստ սրբոյ Լուսաւորչին մերոյ տեսլեան, նորին աղագաւ՝ անօգուտ է ջանն՝ որ վասն նոցին, զի շահն սակաւ է, և վնասն յոլով ։

Այլ որ 'ի ձեռն գաղտ պսակ դիցէ ումեք, այլ եթէ ծնողս ունիցի, և միաբան իցէ և ոչ բաժանեալ, գիտութեամբ և կամաւ նոցին եղիցի ։ Իսկ եթէ ոչ ընդ ծնողօք՝ հասարակաց տեսութբ յայտնի դիցի պսակն, զի վկայեսցի յամենեցունց՝ թէ ուղիղ է, և ոչ ընդդէմ օրինացն այ. որով և երգոցն ձայնք և նուագարանացն՝ զնոյն նշանակեն, իբրև թէ վկայս պսակելոցն զամենեցունց լսելիս և զտեսանելիս կացուցանելով ։ Իսկ գաղտնին՝ անվկայ է և անհաստատ, և ոչ ընդ օրինօք, յորմէ պատուէր տամք 'ի բաց հրաժարել, և ոչ յանդըգնել յայսպիսի իրս վասն ագահութեան ։

Այլ և կնաթողաց արանց՝ կամ այրաթողաց կանանց՝ առանց կանոնական հրամանին դիցէ ոք պըսակ, զի մի լուծիցէք դուք 'ի քահանայական կարգէ՝ ըստ կանոնաց, և եդեալ պսակն քակտեսցի. և եթէ բռնանան և ոչ բաժանին՝ ընդ պոռնիկս համարեալ լիցին ։

Այլ և այնոցիկ՝ որք առևանգս առնեն, դնիցէք պսակս. զի հակառակ օրինաց այ է, և բիւր չարեաց պատճառք՝ 'ի սատանայէ շարժեալք 'ի մոլեկան ախտոն. և բազումք այն իսկ են՝ որ յետ առեալ պսակին՝ յորժամ յագին դիւական տռփմամբն՝ մեծաւ ատելութեամբ բաժանին 'ի միմեանց, և պառ-

nino prohibere, arbitramur. Quocirca Sacerdotibus praecipimus hoc tantum: ne propter avaritiam eos alliciant, neque libenter excipiant, sed difficulter id agant, atque instante necessitate. Si enim in fide firmi mansuri fuerint, optima erit vestra adhortatio ac voluntas. At quoniam viventes in corpore iterum quasi per aquas transfretaturi sunt, atque, juxta visionem Sancto Illuminatori nostro revelatam, ex lucidis ovibus in nigerrimas capreas transmutaturi; propterea inutilis erit conatus de illis, quia lucrum est parvum, damnum autem multum.

Nemo e vobis clam Coronam imponat [157]. Si enim (*Sponsis*) parentes fuerint, apud quos versentur, et a quibus non sint disjuncti, id eorum consensu ac voluntate est peragendum. Sin autem cum parentibus non vixerint, palam Corona imponatur, pluribusque aspicientibus, ut ab omnibus testificetur, rectum esse (*opus istud*), et non contra Dei legem; cujus indicia sunt vel ipsae canticorum ac musicalium instrumentorum voces, quae adstantium aures et oculos quodammodo testes reddunt coronatorum. At clandestinum sine teste, instabile et illegitimum est; a quo abstineri, et nunquam avaritiae causâ idipsum audere jubemus [158].

Nemo absque canonico praecepto [159] Coronam imponat viris, qui suas uxores, aut mulieribus, quae suos viros reliquerunt; ne, juxta Canones, a Sacerdotali ordine deponamini, et imposita Corona dissolvatur. Quod si vi utantur, nolintque separari, adulteri habebuntur.

Nec illis, qui raptores dicuntur, imponatur Corona; id enim est contra Dei legem, multorumque malorum a diabolo in perditis hominibus excitatorum fit causa, pluresque sunt, qui post fictam Coronam, quum diabolicâ concupiscentiâ saturati fuerint, alter ab alterâ, maximo odio separantur; qui

կադիրքն այսպիսեացս՝ կցորդ չարեաց նոցին լի-նիցին :

Մի՛ և տղայոց անմեղաց՝ յաղագս ագահութեան հայրենի ժառանգութե, կամ վասն այլ ինչ պատ-ճառի՝ պսակ դիցէ ոք 'ի քահանայից, զի բազումք վնասք լինին յայնցանէ 'ի պատճառս բաժանման յետոյ 'ի միմեանց : Այլ ժամանակ պսակի է 'ի զար-գանալ արութե հասակին, 'ի հնգետասաներին ամաց լրումն առնն, և յերկոտասաներին՝ կամ ևս առաւել՝ կնոջն, որպէս զի կարող լինիցին ըստ բանաւորաց՝ հաճութեամբ զուգիլ ընդ միմեանս, առ 'ի հաստա-տուն լինելոյ զուգութեանն, և մի ըստ անբանից առանց կամաց և յօժարութեան՝ անհաստատ գո-լով, և առ ժամայն պատահումն : Եւ այրն աւա-գագոյն պարտ է լինել ըստ ժամանակի քան ըզ-կինն, որպէս զԱդամ նախ ստեղծեալ այ, և ապա զԵւայ :

Մի՛ ոք 'ի քահանայից 'ի բռնութէ բռնաւորաց՝ առանց կամաց առնն և կնոջն պսակ դիցէ, որպէս լսեմք 'ի կողմանս հայաստանեաց լինել, որ ընդ իշ-խանութեամբ այլազգեաց են : Զի պսակն այն ան-հաստատ է և լուծանելի, և պսակադիրքն ոչ ա-ռանց պատժոց, թէ և ակամայ է գործն, և կաշա-ռառուքն բռնաւորաց վասն ջատագով լինելոյ նոցին յանիրաւ գործն յայն՝ առաւել դատապարտութե և անիծից են արժանի, զի զօրէնս այ և զդատաս-տանս եկեղեցւոյ լուծանել փութան բռնութեամբ աւագաց : Վասն որոյ՝ առանց խղճոյ է լուծումն այնպիսւոյ պսակին. քանզի չէ ըստ հրամանին այ, այլ 'ի մարդկային բռնութենէ :

Մի՛ ոք համազգեաց, որոց արեան մերձաւորու-թիւն իցէ, պսակ օրհնութեան դիցէ. այլ մինչև 'ի յերկուց կողմանցն զչորրորդ ազգին գլխաւորու-թիւնն կատարեալ ունիցին : Եւ թէ զինչ պատճա-ռաւ զչորեակ թիւն կանոնադրեցին հարքն սուրբք սահման ամուսնութեան՝ ծանուսցուք զի գիտիցէք :

Քանզի բնութիւն մարմնոյ 'ի չորից տարերաց գոլով, յիրաւի և մարմնական ազգակցութիւնն մինչև 'ի չորրորդ թիւն ժամանէ, որ է այսպէս : Ի

vero talibus Coronam imponunt, eorum improbitatis fiunt socii.

Nemo e Sacerdotibus Coronam imponat innocentibus pueris, sive paternae haereditatis avaritiâ, sive aliâ de causâ; quia multa inde nascuntur damna, et causae deinde separationis. At Coronae tempus est, veniente pubertate, viri perfecto anno XV. et foeminae XII. et amplius; ut rationalium more possint ultro invicem conjungi, sintque stabiles in unitate, non autem brutorum more absque voluntate et consensu instabiles et fortuito. Vir quoque major esse debet aetate quam foemina; Adam siquidem prius a Deo creatus est, et postea mulier.

Nemo e Sacerdotibus Tyrannorum vi, absque viri vel mulieris voluntate, Coronam imponat; quemadmodum fieri audimus in iis Armeniae partibus, quae Infidelibus subsunt. Hujusmodi enim Corona instabilis est, ac solubilis; qui vero eam imposuit, non sine punitione erit, etiamsi actio istaec fuerit involuntaria. Qui autem dona offerunt tyrannis, ut eos habeant patronos in hoc injusto opere, majori damnatione ac maledictione sunt digni; quippe quod Potentium vi leges Dei, Ecclesiaeque judicia solvere festinant. Quapropter haud injusta erit hujusmodi Coronae dissolutio; non enim juxta Dei praeceptum fuit, sed ex hominum violentiâ.

Nemo benedictionis Coronam iis imponat, inter quos adest sanguinis propinquitas, nisi quartam utrique generationem prorsus impleverint. Cur autem quartam generationem, quasi matrimonii terminum, statuerint Sancti Patres, istud, ut sciatis, expendamus.

Quum corporis natura quatuor constet elementis, jure etiam corporea cognatio ad quartum gradum extenditur. Id autem hoc pacto evincitur. Ex uno

միոյ հօրէ երկուց եղբարց բաժանեալ, հաւասար ունին յինքեանս զհօրն գոյացութիւնս. իսկ առ 'ի նոցանէ ծնունդքն՝ զկէս արեան եղբայրութեանն. և երրորդ ծնունդն՝ որ եղբարցն որդւոց, զկիսոյն կէս արեանն միայն. իսկ չորրորդ ծնունդն՝ որ 'ի նոցանէ, զչորեակ մասն արեանն մնացելոյ: Նոյն այս է սահման և կէտ արեան մերձաւորութեան:

Նոյն քանզի ամենայն փոյթ այ և ածայնոցն՝ յաղագս սիրելոյ է զմիմեանս մարդկան, վասն այնորիկ իրաւունս համարեցան որք հովուոքն օրէնսագրեցին, զօտարացեալսն 'ի միմեանց միանալ սիրով՝ ամուսնութեանն կապակցութեամբ: Իսկ զմերձաւորսն արեամբ՝ բաւական վարկան համազգութիւն միայն ունել զհաղորդութիւն սիրոյ առ իրեարս: Նոյն այս է առաջին պատճառ՝ ոչ տալոյ թոյլ համացեղիցն ամուսնութեան. են և այլք յոլովք, զորս իմաստնոց թողաք քննել:

Նոյն արդ՝ որ այսպիսի մտերմութիւն ըստ օրինացն այ լինիցի պսակն, որպէս և գրեցաք, մի յայլում ժամու դիցէ զայն քահանայն, բայց յառաւօտէ աւուրն մինչև ցժամ ճաշոյն. և կերեալ և արբեալ զոք՝ մի թողուցուք յեկեղեցին, և մի յանառակ կանանց կամ յարանց, որ յայլում ժամու չեն արժանի եկեղեցւոյ, զի մի պղծեսցի նոքօք տաճարն այ, և աղտեղասցի պսակն օրհնութե: Նոյն 'ի ժամ կատարելոյ զաւուրս պսակին՝ երգք գուսանացն լռեալ դադարեսցեն, մինչև ելցեն յեկեղեցւոյն, զի մի դիւական երգքն խառնեսցին ընդ ածային երգոցն: Նոյն 'ի բուն բարեկենդանին օրէ սկսեալ՝ մինչև ցը-կատարումն պահոց շաբաթուն՝ որ յետ պենտակոստէին է, մի ոք 'ի քահանայից ագահութեամբ պսակ դիցէ ումեք, և ոչ յամենայն կիւրակէս տարւոյն՝ որպէս հաստատեցին կանոնաւ սուրբ հարքն առաջինք: Քանզի պահոց քառասնորդացն աւուրքն՝ սգոյ և տրտմութե է, և խորհուրդ չարչարանաց տեառն, և ոչ զինարբութեան և ուրախութեան հարսանեաց: Իսկ յինունքն և կիւրակէքն ունին զօրինակ երկնաւոր փեսային Քի հարսանեաց և հարսին եկեղեցւոյ, որ լինելոց է 'ի հանդերձեալ աշխար-

patre duo separati fratres aeque habent in se patris substantiam. Deinde, qui ab iis gignuntur, fraterni sanguinis dimidiam habent substantiam. Tertia generatio, quae a fratrum filiis est, habet solummodo dimidiam dimidii sanguinis. Quarta demum, quae ab iis est, quartam habet sanguinis partem; et hic est terminus ac punctum propinquitatis sanguinis.

Quoniam vero universa Dei divinorumque (*oraculorum*) diligentia est propter mutuum hominum amorem; ideo, qui Spiritu leges tulere, alienos inter se vinculo matrimonii per dilectionem conjungendos aequum esse duxerunt. Pro iis autem, qui sanguine conjuncti sunt, solam cognationem satis esse putarunt ad mutuum amoris commercium. Haec autem prima ratio est matrimonii non permittendi inter cognatos. Et aliae quidem sunt, quas sapientibus examinandas relinquimus.

Verum quum, juxta Dei legem, hujusmodi, sicuti scripsimus fuerit Corona, eam non imponat Sacerdos aliâ horâ, quam a diluculo usque ad meridiem, nec sinat Ecclesiam ingredi eos, qui manducaverunt et biberunt, neque impudicas mulieres, aut viros, qui reliquis horis non sunt digni ingredi templum, ne per ipsos domus Dei polluatur, et benedictionis Corona contaminetur. Quum vero sancta Corona imponitur sileant (*saeculares*) cantus, donec ab Ecclesiâ (*sponsi*) discedant; ne cum divinis canticis diabolici cantus misceantur. Item a Baccanalibus [160] incipiendo, usque ad exitum hebdomadis abstinentiae, quae post Pentecosten[161] fit, nemo e Sacerdotibus ignoranter Coronam alicui imponat, neque in ulla anni Dominicâ; quemadmodum in Canonibus statuere Sancti Patres priores. Dies enim Quadragesimalis jejunii, luctûs tristitiaeque sunt ob passionis Christi mysterium; non autem helluationis et convivii nuptiarum. Et quinquaginta dies post Pascha, necnon Dominicae omnes exemplum exhibent nuptiarum Christi coelestis sponsi, ejusque sponsae Ecclesiae; festivitatis videlicet, quae in futuro sae-

Հին՝ յորժամ խառնեալ միանան ազգ. արդարոց մարդկան ընդ ինն դասս հրեշտակաց, զոր և անուն իսկ աւուրցդ յայտ առնէ, յիսունք վերակոչելով, որով և զհաւաստացեալս ամենայն՝ մանկունս առագաստի հարսանեաց անուանեաց տէրն, որոց հրամայէ՝ ոչ պահել որչափ զփեսայն ընդ ինքեանս ունիցին. որ են աւուրք յարութեան նորա մինչև 'ի վերանալ նորին յերկինս: Վասն այսր պատճառի՝ ոչ պատշաճ համարեցան հարքն սուրբք 'ի հոգևոր հարսանեացն օրինակի աւուրսն՝ յորում ասացաւ 'ի տեառնէ ոչ արանց կանայս առնել, և ոչ կանայք արանց լինել, զմարմնականս զայս կատարել հարսանիս, որ է ախտաւոր և ծննդական:

Այլ որոց 'ի հարսանիսն երթիցեն քահանայք՝ զայս խրատ պատուիրանի աւանդեմք: Մի յապաղել անդր ընդ գինարբու աշխարհականացն մանկունս, յորում յոլովս մեղանչեն անպատրաստքն՝ որք գերինն 'ի նմա 'ի տեսանելն 'ի լսելն և 'ի խօսել զանուղղայս. այլ յորժամ զրաւ լինիցի կերակրոյն, և մինչ յերկս միայն արբումն բաժակի՝ յառնել վաղվաղակի 'ի սեղանոյ անտի, զի մի ընդ գինեմոլսն յարբեցութեան ըմբռնեալ՝ այպն լինիցի արտաքնոց տեսողաց, ոչ միայն ինքն, այլ և ամենայն քահանայք միով: Այլ ծանրագոյն ապաշխարութբ, թէ արդեօք քաւեսցէ զարբեցութենն մեղս, վերըստին արժանի լինել քահանայագործութեան:

Մի ոք 'ի քահանայից զաստանայական յանցանս յինքեան ցուցցէ, այն՝ որ հակառակ եկաց այ և կործանեցաւ, և ընդդիմակաց լինիցի եպիսկոպոսին իւրոյ՝ 'ի բանս կամ 'ի գործս, որպէս Կորխ և Դաթան Մովսիսի և Ահարոնի, զի մի զնոցին կործանումն ընկալցի յայ. մանաւանդ այնոքիկ՝ որք յանդգնին կապալս յարուցանել 'ի վերայ եկեղեցւոյ, կամ աճեցուցանել զյառաջագունից եղեալսն, և այսու պատճառաւ՝ արտաքսեն զեպիսկոպոսունս յաթոռոց բռնութեամբ այլազգեաց, և ինքեանք լինին հրամանատարք ժողովրդոց, և կապալատուք փոխանակ նոցա: Որք անձամբ զանձինս 'ի ներքոյ առնեն անիծելի դատաստանացն այ, և անիծից

culo habenda est, quando novem Angelorum choris homines justi addentur atque coalescent. Quod vel ipsum illorum dierum nomen *Hinunk* [162] declarat: ita ut ipsemet Dominus universos fideles *pueros thalami nuptiarum* appellaverit [163]; quibus in mandatis dedit, ne jejunarent *quamdiu sponsum secum habuissent* [164]: quo designantur illius resurrectionis dies usque ad ejus in coelum ascensionem. Quapropter Sancti Patres arbitrati sunt, non decere diebus nuptiarum spiritualis Typi, in quibus dictum est a Domino: *neque nuberi, neque nubere* [165], esse perficiendas has corporeas nuptias, quae vitiosae sunt et generatrices.

Istud vero Sacerdotibus, qui ad nuptias pergunt, mandamus. Ne detineamini cum filiis saeculi in crapulâ, quâ valde peccant ii, qui non animadvertunt, illuc morando aspicientes et audientes et loquentes inhonesta. Verum prope ciborum finem, ad tria usque pocula [166], statim surgite ab ea mensa, ne quis vestrum forte cum vinolentis in ebrietate deprehensus derisioni sit saecularibus; neque ipse solus, sed et per unum ceteri omnes Sacerdotes. Magnâque poenitentiâ, si quodammodo ebrietatis veniam obtinere poterit hic (*Sacerdos*), rursus Sacerdotali ministerio dignus fiat.

Nemo e Sacerdotibus diaboli peccatum, ob quod hic resistens Deo praeceps ruit, praeseferat, verbo aut opere adversus Episcopum suum reluctans, sicuti Core et Datan adversus Moysen et Aaron; ne illorum ruinam a Deo consequatur. Tanto pejus autem si super Ecclesiam suscitare audeant indictiones [167], vel ab initio impositas augere; qua de causa per Infidelium manus Episcopos a sede removent, et ii populo praesunt, proque illis solvunt pensiones. Isti a semetipsis irremissibili Dei supplicio, damnationisque maledictioni sese subjiciunt: isti non sunt digni Sacrificium offerre, neque in morte Communionem suscipere, nec Sacerdotali more sepeliri.

դատապարտութեան ։ Մնափոխելն ոչ են արժանի 'ի կեանս իւրեանց քահանայագործութիւն առնելոյ, և ոչ 'ի մահուան՝ հաղորդի, կամ քահանայական թաղման ։

Դարձեալ, մի՛ ոք 'ի քահանայից կամ 'ի ժողովրդոց ղեկեղեցւոյ դատաստան՝ առ մարմնական իշխանս դատեսցի կամ առ այլազգիս կամ առ քրիստոնեայս, զի մի՛ դատապարտեսցի յառաքելական և 'ի կանոնական հրամանացն ։ Որպէս և գրէ Պաւղոս առ կորնթացիսն, թէ « Իշխէ՞ ոք 'ի ձէնջ, եթէ իրք ինչ իցեն ընդ ընկերի իւրում, դատել առաջի անիրաւաց, և ոչ առաջի սրբոց » ։ Նա հարցն սուրբ 'ի կանոնս իւրեանց՝ լուծանել հրամայեն 'ի քահանայութենէ՝ որ զայս առնէ ։

Դարձեալ՝ մի՛ ոք 'ի քահանայից հոգաբարձու քաղաքի կամ գեղջ լինիցի, կամ գաւառապետ աշխարհական իշխանաց, կամ գրող հարկաց և սակից, կամ այլ ինչ գործակալութիւն աշխարհի լինելով ։ Քանզի անկարելի է ըստ տէրունական հրամանին՝ երկուց հակառակ տերանց ծառայել, և հաճոյանալ տեառն մրյ՝ որ է եկեղեցի մրյ կենդանւոյ, և տեառն աշխարհակալաց ։ Վասն որոյ՝ ընտրեսցէ այնպիսին 'ի միոյն 'ի բաց կալ, կամ յաշխարհի հոգաբարձութենէն, կամ 'ի քահանայական գործոյն ։ Իսկ եթէ ընդ աշխարհական հոգոցն յանդգնի և զքահանայական պատիւն ունել, և զտեսչութիւն ժողովրդոց, բռնութիւն է այն, և ոչ հրամանաւն մրյ և մեր, որ և դատելոց է այնպիսին ընդ կրկին յանդգնութեան ։

Լսեմք զոմանց քահանայից՝ ձիավարժս լինել և զէնս առնուլ ըստ զինուորաց, և 'ի խրախճանութիւնս խաղուց ձիընթացից ընդ նոսին արշաւել երիվարօք՝ 'ի յորս երէոց, և 'ի նետաձգութիւնս, և յամենայն ինչ յայսպիսիս, որ նոցայն գործոյ է անկ և ոչ եկեղեցւոյ սպասաւորաց, զի զէն զինուորութեան մերոյ ոչ է մարմնաւոր, որպէս հրամայէ առաքեալ, այլ հոգևոր և ածային, որով պատերազմիմք՝ ոչ ընդ մարմնոյ և ընդ արեան, այլ ընդ իշխանութիւնս և ընդ պետութիւնս, ընդ այսս չարութեան՝ որ 'ի ներքոյ երկնից ։ Վասն որոյ աղաչեմք՝ 'ի բաց լինել յայսմհետէ 'ի յանկարգ սովո-

Item nemo e Sacerdotibus aut e populo coram saecularibus Principibus sive Infidelibus, sive Christianis, Ecclesiae judicium ferat judicandum, ne ab Apostolico et Canonico praecepto condemnetur, sicut et Paulus ad Corinthios scribit: *Audet aliquis vestrum habens negotium adversus alterum, judicari apud iniquos et non apud sanctos* [168]? Et Sancti Patres in suis Canonum codicibus, qui id agit, a Sacerdotio deponendum praecipiunt.

Praeterea nemo e Sacerdotibus villicationem administret sive in urbe sive ruri, neque saecularium Principum sit procurator, vel tributorum ac vectigalium exactor, neque alio quovis ministerio in civitate perfungatur. Haud enim fieri potest, juxta Dominicum praeceptum, ut quis duobus oppositis dominis inserviat, placeatque in domo Dei, quae est Ecclesia Dei vivi, et in domo saecularium. Idcirco utrumlibet iste seligat: aut a saecularibus curis disjungatur, aut ab opere Sacerdotali. Sin vero cum opere saeculari Sacerdotale quoque munus ac populi regimen exercere ausus fuerit; violentiâ id egerit, non vero jussu Dei vel Nostri, seque judicio suâ duplici arrogantiâ subjiciendum noscat.

De quibusdam Sacerdotibus audimus, ipsos equitationi studere, armaque gestare, ceu milites, et equorum ludis dediti, unâ cum illis equo insidentes currunt, belluas venando, jaculando, et alia id genus agendo, quae opus militare decent, non autem Ecclesiae ministros. Arma enim militiae nostrae non sunt corporalia, sed, quemadmodum Apostolus praecipit, spiritualia et divina, quibus *colluctamus non adversus carnem et sanguinem, sed adversus principatus et potestates ..... contra spiritus nequitiae sub coelo* [169]. Quapropter oramus vos, ut hanc malam consuetudinem deinceps projiciatis, et nonnisi itine-

րութենէ աստի, և բայց թէ 'ի ճանապարհի՝ եթէ 'ի հետիոտս և թէ երիվարաւ՝ առնուլ զէնս, յաղագս երկեղի ինչ եղելոյ կարծեաց, և այն՝ պարկեշտութեամբ, և ոչ ըստ զինուորութեան կարգի՝ կապարճիւք, և կազմեալ սուսերաւ։ Այլ ոչ ևս է արժան առնուլ զէնս կարգաւորաց, կամ արշաւանս առնել երիվարօք՝ ըստ մանկական բարոյից, 'ի բամբասանաց պատճառս տեսողաց։ Զի զորս խրատէ Պաւղոս զզէնն լուսոյ զգենուլ, այս ինքն զուղիղ հաւատս և զգործս բարեաց, և նոքօք կռուել ընդ բնութեանս մերոյ թշնամւոյն, չէ արժան զխաւարայինս զայս զէն ստանալ յանձին, և պատերազմել սոքօք ընդ համազգեաց մերոց մարդկան, կամ խոցոտել զանբանից կենդանեաց հոյլս, և կամ սիգաքայլ երիվարօք յօրանալ, բայց թէ 'ի տկարութէ։ Քանզի յայտնանէ և 'ի սոյնպիսեացն՝ արգելուն զմեզ ածային պատուիրանքն։

Քահանայ, եթէ զոք 'ի ժողովրդենէ իւրմէ՝ վասն պատուիրանազանց լինելոյ՝ ընդ բանիւ առնիցէ, և նորա յամառեալ մնայ 'ի յանցանսն, և ոչ դառնայ, այլ ոք 'ի քահանայից անտի մի իշխեսցէ ընդունել զնա յեկեղեցի իւր, որպէս սովոր են ոմանք 'ի տգէտ քահանայից յինքեանս ձգել զայնպիսիսն, և որ զայս առնէ, նա տայ նմա 'ի մեղաց անտի անդարձ լինել, և զանձն իւր կցորդ պատուհասի յանցանաց նորա առնիցէ։ Այլ վասն այսպիսի իրաց եղելոց՝ այս օրէնք հաստատեսցի 'ի միջի ձերում, զի զորշեալն 'ի միոյ քահանայէ, և ամենայն քահանայակիցք նորին նմանապէս 'ի բաց որոշեսցեն յինքեանց, մինչև զղջացեալ յանցաւորն դարձցի յանուղղայ գնացից իւրոց, և առաջի անկեալ խնդրեսցէ զթողութիւն, և ուխտ դիցէ այ ապաշխարել, և այլ ոչ ևս 'ի նոյն սովորութիւն չարեաց անկանել։ Եւ յորժամ յիւրոյ քահանայէն այսպիսի, օրինակաւ ընկալցի զթողութիւն, յայնժամ և այլ քահանայքն ընկալցին զնա սիրովն այ։ Այս օրէնք ուղղութեան և 'ի մէջ եպիսկոպոսաց հաստատեսցի. որպէս զի զառ 'ի միոյ եպիսկոպոսէն բանադրեալն 'ի քահանայից կամ յաշխարհականաց, այլ ոք յե-

rantes sive pedibus sive equo arma ob metum feratis, eaque honeste, non autem militum ritu cum pharetrâ aut gladio optime ornato. Aliâs Sacerdotes dedecet armari, vel pueriliter equitare; id namque videntibus causa fit detractionis. Quos enim Paulus monet, ut *induantur arma lucis;* idest rectam fidem ac bona opera; iisque naturae nostrae adversario bellum inferant, non licet iisdem tenebrosa arma comparare, iisque bellum gerere adversus ejusdem naturae homines, aut belluarum gregem ferire, aut superbis equis nisi ob infirmitatem vehi: ab hisce enim iisque similibus operibus divina mandata nos arcent.

Si quem e suo populo excommunicaret Sacerdos ob ejus in praeceptis transgressionem, ipseque pervicax in suo peccato manserit, nec resipuerit; nemo ex aliis Sacerdotibus in propria Ecclesia audeat excipere, quemadmodum insipientium Sacerdotum quidam agunt, istos ad se pertrahentes. Qui autem id operatur, ipsemet causa fit illius pervicaciae in peccato, seque socium reddit supplicii ejus delicti. Verum quoad haec, constans inter vos lex ista servetur: Ab uno Sacerdote depulsus a ceteris Sacerdotibus aeque depellatur, donec transgressor e via sua ad rectam revertatur, atque sese humilians veniam petat, Deoque voveat poenitentiam agere et non amplius in eamdem mali consuetudinem reverti. Quum autem hoc pacto a suo Sacerdote veniam obtinuerit; tunc alii quoque Sacerdotes in charitate Dei illum recipiant. Et sane haec ipsa aequitatis regula inter Episcopos quoque confirmatur; illum enim, qui ab uno Episcopo excommunicatus est, sive Sacerdos fuerit sive laicus, nullus alius Episcopus facultatem habet absolvendi, praeter eum, a quo fuerat excommunicatus.

ողխկապոտաց ոչ ունի իշխանութիւն լուծանելոյ, բաց 'ի բանադրողէ անտի ։

Դաւանեմք և զայս ևս պատուիրան ամուրեաց քահանայիցդ՝ որ ըստ աշխարհի, զի որումք 'ի մանուկական հասակին հասանէ վախճան ամուսնոյն, թէ կամեսցի զոգի իւր ապրեցուցանել 'ի մեղաց և 'ի բամբասանաց, և սուրբ խորհրդոյն արժանաւորապէս սպասաւորել, հրաժարեալ յաշխարհէ՝ ըստ կանոնական հրամանին՝ 'ի կարգ կրօնաւորութեան մտցէ ։ Զի 'ի մէջ աշխարհի՝ սովորական ընդելութեամբ՝ լինելով 'ի տեսութիւնս, և 'ի խօսակցութիւնս ընդ կանայս, մանաւանդ խոստովանութեան նոցին լինել ընդունող ըստ օրինի քահանայութեան, անհնար է սրբութեամբ ծառայել Աստուծոյ. ապա թէ ընդանձուկ ճանապարհն գնալ դժուարանայ, զլայնն և զարձակն սիրելով, լաւ և արժան է նմա 'ի սրբոյ պատարագին սպասաւորութենէ, թէ և 'ի յայտնի վատութիւնս ոչ բամբասի ։ Քանզի ոչ կարէ յերիտասարդական հասակին՝ մաքրապէս սպասաւորել սրբութեանցն. մանաւանդ՝ որ ոչ երկեղածութեամբ և պարկեշտութեամբ և պահօք և աղօթիւք զգուշանայ անձին իւրում, այլ աներկեղութեամբ վարի 'ի կերակուրս և յըմպելիս, և յամենայն տեսակս ընդարձակ վարուց ։ Իսկ որոյ մերձ 'ի ծերութիւն հասանէ վախճան ամուսնոյն, և վստահ լինի յանձն իւր՝ սրբութեամբ և անարատ վարուք և առանց բամբասանաց սպասաւորել Աստուծոյ, որպէս զի զօգտութիւնս ընկալցի 'ի տեսողաց և մի բամբասանս, այնպիսին կացցէ յեկեղեցւոջ իւրում որքան ախորժէ ։

Իսկ արդ քահանայիցդ առ 'ի խրատ զոր գրեցաք սակաւուք, ոչ իշխանաբար հրամանս տալով՝ այլ ծառայակցապէս աղաչելով, բաւական լիցի առ 'ի մէնջ ։ Իսկ զպակասեալն 'ի մերոցս՝ ունիք հմտանալ կատարելապէս 'ի հարցն առաջնոց կանոնական գրոց, որովք օրինադրեցին զմանկունս եկեղեցւոյ 'ի փառս Աստուծոյ ։

Hujusmodi etiam praeceptum coelibibus [170] Praesbyteris saecularibus tradimus. Ille, cui in juvenili aetate decessit uxor, si voluerit animam suam ab occasione peccati, et a detractione liberare, digneque inservire ministerio sancto; mundum relinquens, juxta canonicum praeceptum, religiosum ordinem ingrediatur. In mundo enim, consuetâ familiaritate cum mulieribus versando, aspiciens, ac loquens, maxime autem illarum excipiens confessiones, haud fieri potest, ut juxta Sacerdotii legem Deo sancte deserviat. Verum, nisi velit per viam arctam incedere, latam potius et spatiosam diligens, abstinendum est ei a sancti Sacrificii administratione, etiamsi per manifestum aliquod crimen minime diffametur. In viridi namque aetate difficilius est pure Sanctitati inservire; praesertim qui non sibi prorsus cavet cum timore et puritate et jejunio et oratione, sed absque timore ad cibos, et potus, atque ad omne perditae vitae genus fertur. Ille autem, cui prope seni uxor interiit, quique confidit, se in sanctitate ac puritate vitae atque sine famae suae laesione Deo inserviturum, ut laudem, non improperia ab aspicientibus accipiat; hic in suâ Ecclesiâ, quoadusque velit, moretur.

Satis superque a Nobis breviter ad Sacerdotes scripta admonendo, nequaquam auctoritate praecepta imponendo; sed quasi conservi rogando. Quae vero hîc desunt, scire debetis ex canonicis priorum Patrum libris, quibus Ecclesiae pueros [171] ad Dei gloriam in ordinem redegerunt.

## ԱՌ ԻՇԽԱՆՍ ՈՐ ԸՍՏ ԱՇԽԱՐՀԻ։

ՓՈԽԵՍՑՈՒՔ զա̃ծային պատուիրանացն խրատ և առ ձեզ՝ որ ըստ աշխարհի ունիք զքաղաքավարութի̃։ Եւ նախ և առաջին առ իշխանսդ, որք 'ի նուաճեալ ժամանակիս տիրէք 'ի տեղիս տեղիս բազմաց, և կամ սակաւուց զօրաց և գաւառաց։ Զորս աղաչեմք մի անհնազանդ լինել օրինացն ա̃յ. այլ որպէս կամիք զի ծառայք ձեր զկամս հրամանի ձերոյ հնազանդութեամբ և անթերի կատարեսցեն, որք թէ և զմի ինչ 'ի հրամայելոցն անկատար թողուն՝ պատուհաս կրեն 'ի ձէնջ, նոյնպէս և դուք՝ վասն զի բնութեամբ ծառայք էք ա̃յ՝ ծառայեցէք տեառն երկիւղիւ և հնազանդութեամբ. զի մի պատուհասիցիք իբրև զապստամբեալս 'ի տեառնէ, այլ որպէս զմտերիմ ծառայս պատիւ ընդունիցիք յերկնաւոր թագաւորէն։

Եւ արդ՝ առաջին զայս պատուիրան աւանդեմք ձեզ. մի անիրաւաբար վարիք առ հնազանդեալսդ ծանր և դժուարակիր հարկադրութեամբ[13], զոր ոչ կարեն բառնալ, այլ օրինօք դատեցէք, և ըստ չափոյ զօրութեան զիւրաքանչիւր ոք։ Զմտաւ ածէք, զի և ձեր՝ տէր գոյ յերկինս, և ակնառութի̃ ոչ է առաջի նորա, որպէս և առաքեալ ասէ։

Մի զոք զրկէք 'ի մարդկանէ, և մի նեղէք զաղքատս և զտնանկս, զի մի բողոքեսցեն առաջի ա̃յ վասն ձեր, և ա̃ծ լուէ նոցա, ըստ իմաստնոյն Սողոմոնի. զի ասէ՝ թէ “Մի տար պատճառս աղքատին անիծանել զքեզ, զի մի արարիչ նորա լուիցէ նմա, և հատուսցէ քեզ չարիս։

Մի չար և անիրաւ գործակալս և գաւառապետս կացուցանէք 'ի վերայ աշխարհի ձերոյ, զի մի յանիրաւութենէ նոցա՝ զոր գործեն, դուք դատիք յա̃յ հանդերձ նոքօք. այլ զարդարամիտս և զարդարադատս ընտրեցէք, ունել 'ի վերայ մարդկան զգործակալութիւն, զի մի զարքունական սահմանեալ իրաւունսն վաստակաւորացն՝ թողցեն, վասն սա-

## AD PRINCIPES NOSTROS ARMENIOS [172].

Convertamus et ad vos, qui saeculi consuetudine utimini, divinorum praeceptorum admonitionem; atque in primis et ante omnia ad vos, o Principes, qui labentibus hisce temporibus huc et illuc imperatis pluribus vel paucis militibus, aut provinciis. Obsecro itaque vos, haud inobedientes esse Dei legibus; sed quemadmodum vultis, ut obedienter et integre adimpleant subditi vestri vestra praecepta (qui, si praeceptorum quidpiam haud absolutum relinquunt, poenam a vobis ferunt); ita et vos, utpote naturâ Dei servi, servite Domino in timore atque obedientiâ, ne puniamini veluti Deo rebelles; quin potius, quemadmodum fideles servi in coelestibus regnant, honorem accipiatis.

Primum itaque praeceptum, quod vobis tradimus, hoc est: ne agatis injuste subditis, onera eis imponendo, quae ferre non valent; sed unumquemque rite et pro viribus judicate. Animadvertite, vos quoque habere Dominum in coelis, neque esse coram eo personarum acceptionem; quemadmodum vel ipse Apostolus dicit [173]. Neminem fraudetis, neque pauperes et egenos affligatis; ne contra vos Deum appellent, eosque Deus exaudiat, juxta sapientem Salomonem, qui dicit: *Non relinquas quaerentibus tibi retro maledicere; exaudiet autem eum, qui fecit illum, et retribuet tibi mala* [174].

Ne ponatis malos injustosque ministros et praefectos super provincias vestras, ne vos quoque ob illorum injustitias a Deo judicemini unâ cum ipsis; sed integerrimos judices eligite administrationem super homines tenentes, ne propter parvam ipsis oblatam mercedem aut exonerent a solutione multi tributi operariis impositi regio jussu, aut ipsi furentur;

կաւ կաշառոցն զբազումս, և կամ ինքեանք գողացին. և մի՛ առաւել քան զհրամայեալսն՝ նեղեսցեն զնոսա և առցեն: Ո՜ի անիրաւութիւն են երկու կողմանքն առաջի ա̃յ. այլ այնպէս իրաւադատ լինիցին, զի տացեն զկայսերն՝ կայսեր, և զա̃յն՝ ա̃յ:

Մի՛ զոք անիրաւութեամբ դատիք, այլ ուղիղ դատաստան արարէք, զի և ձերն դատաստան քաղցրութեամբ լինիցի յա̃յ և մի՛ խստութեամբ: Մի՛ վասն կաշառաց, կամ վասն սիրելութե̃ն միոյ կողմանն, կամ վասն ատելութե̃ն և ոխակալութեան, կամ վասն պատուոյ երեսաց, 'ի միոյն աչառելով զանիրաւն արդարացուցանէք 'ի դատաստանի, և զարդարոյն թիւրէք զիրաւունս, զի մի՛ անիծից օրինացն ա̃յ որ յաղագս այսորիկ՝ պարտականս զանձինս առնիցէք:

Մի՛ անտես առնէք զայրւոյն և զաղքատին զիրաւունսն, յորժամ աղաղակեն առաջի ձեր՝ վասն զրկողաց իւրեանց, այլ դատ արարէք որբոյն, և տուք իրաւունս այրւոյն, որպէս ասէ ա̃ծ մարգարէիւն, և ունկնդիր լերուք աղաղակի նոցա, և փրկեցէք զնոսա 'ի նեղչաց իւրեանց, և զյափշտակեալ ինչս նոցա դարձուցէք յանիրաւացն. յայնժամ և ա̃ծ լուող լինի աղաչանաց ձերոց, և կատարէ զխնդրուածս սրտից ձերոց:

Մի՛ որպէս զանբան կենդանիս, որ բնութեամբ ծառայք են մարդկան, ծառայեցուցանէք զմարդիկ՝ որ ընդ իշխանութեամբ ձերով լինին՝ 'ի գործ խիստ և աններելի, որպէս և Փարաւոն՝ զորդիսն Իսրայէլի, և զայն՝ առանց կերակուր տալոյ նոցին, այլ ներելով և քաղցրութեամբ, և սակաւօրեայ ժամանակաւ, և առատագոյն կերակրովք լցուցանել զնոսա յաշխատութիւն անդր, և չափով և մի՛ յանչափս, որպէս զի կարող լինիցին վաստակօք իւրեանց՝ զաղքատանաց կեանս զտանց և զորդւոց իւրեանց լցուցանել, և զարքունական հարկս հատուցանել:

Մի՛ զվարձս վաստակաւորաց ձերոց հատանէք իշխանաբար, որպէս զայնոսիկ՝ զորոց ամբաստանեն

neve eosdem aggravent, neve accipiant ultra praeceptum (haec enim ambo injusta sunt coram Deo); quin potius ita sint justi, ut *reddant, quae sunt Caesaris, Caesari, et, quae sunt Dei, Deo* [175].

Neminem injuste judicetis, sed recte jus dicite, ut et judicium, quod super vos facturus est Deus, dulce sit, non severum. Ne absolvatis injustum in judicio, neque justi torqueatis justitiam propter munera, aut propter alterius partis benevolentiam, aut propter odium indignationemque, aut propter dignitatis reverentiam personae alicujus acceptatione; ne vos ipsi digni efficiamini Divinis maledictionibus hac de causa juxta legem (*indictis*).

Ne negligatis viduae et inopis jura quum ad vos clamaverint contra expoliatores suos; sed *judicate pupillo et defendite viduam*, sicuti per Prophetam Deus dicit [176], atque audite clamorem eorum et liberate eos ab affligentibus se, eisque reddite ab iniquis ablata; et tunc exaudiet Deus orationes vestras, et adimplebit petitiones cordis vestri.

Ne servire faciatis homines, qui vobis subsunt veluti animalia, quae naturâ sunt hominum servi, asperrimis et intolerabilibus laboribus, quemadmodum et Pharao filios Israel, ne ad manducandum quidem porrigentes; sed misericorditer, et humaniter, et ad breve tempus (*laborem imponendo*), abundeque cibum eis praebendo, ut in tempore laboris moderate et non praeter modum perpessi, saturentur, atque suis laboribus possint semetipsos, familiam, suosque filios explere, necnon regium solvere tributum.

Ne abscindatis auctoritate mercedem operariorum vestrorum, ceu illi, quos accusant Apostoli et

առաքեալքն և մարգարէքն, թէ « Զրկեալն 'ի ձէնջ աղաղակէ, և բողոք հնձողացն եհաս յականջս, Տեառն զօրութեանց »: Բաւական լիցի ձեզ՝ զի վաստակօք նոցա մեծանայք, և առաւել քան զչափն փափկանայք, և այն զի ոչ թէ այլ բնութի է նոցա և այլ ձեր, այլ 'ի միոյ կաւոյ և 'ի խառնուածոյ: Քանզի նմանապէս է տերանց և ծառայից, փարթամաց և աղքատաց սկիզբն գալոյ յաշխարհ, և կատարած ելիցն յաշխարհէ: Վասն զի զուգահաւասար ամենեքեան ծննդեամբ մտանեն յերկիր. և մահուամբ ելանեն 'ի սմանէ: Իսկ մեծութիւն և փոքրկութիւն, բարձրութիւն և խոնարհութիւն, բարեբախտութիւն և պանդխտութիւն, 'ի մէջ ծննդեանն և մահուանն պատահեն մարդկան, որ են իբրև զերազ զարթուցելոց, որպէս 'ի փորձոյ անտի՝ յայտնի է ամենեցուն, իմաստնոց և տգիտաց, զի ոչ ինչ 'ի սոցանէ ունի զհաստատութիւն:

Վասն որոյ մի վասն անցաւորիս կենաց՝ կորուսանէք զյաւիտենական զկեանսն. զի թէպէտ և Քն դժուարաւ՝ ասաց՝ մեծատանց յարքայութիւն երկնից մտանել, ըստ օրինակի ուղտոյ ընդ ծակ ասղան, այլ եթէ զմեծութիւն ձեր ըստ կամացն այ 'ի գործ արկանէք, դժուարինն ձեզ դիւրին լինիցի: Զի և Աբրահամ մեծատուն էր, և ոչ միայն արքայութեանն մտանելոյ արժանացաւ, այլ և գոգ նորա արքայութիւն այ եղև և անուանեցաւ, և հանգիստ ամենայն արդարոց: Նոյնպէս և Յոբ, և ամենայն մեծատուն արդարքն՝ ըստ ասելոյն 'ի Տեառնէ, թէ « Տեսանիցէք զԱբրահամ, և զԻսահակ, և զՅակոբ, և զամենայն արդարսն՝ յարքայութեան այ »: Այսպէս և դուք՝ եթէ ըստ նոցին օրինակի գնայք 'ի ճանապարհս արդարութե: Զի ոչ զոք զրկէին, և ոչ զոք նեղէին, ոչ զուրուք զինչս յափշտակէին, և ոչ ումեք առնէին ինչ անիրաւութիւն, և կամ նենգութի, այլ և յիւրեանց արդար ստացուածոցն՝ զքաղցեալս կերակրէին, ըզմերկս զգեցուցանէին, զհիւրս ընդունէին, զկարօտութիւն կարօտելոց՝ լցուցանէին, նեղելոց բաւա-

Prophetae: *Fraudatus a vobis clamat, et clamor operariorum in aures Domini Sabaoth introivit* [177]. Satis sit vobis ipsorum laboribus ditescere, et ultra modum pinguescere, eo magis quod non est alia eorum et alia vestra natura, sed estis ejusdem cretae ejusdemque figmenti. Idem namque est dominis ac servis, divitibus ac pauperibus initium veniendi in mundum et finis egrediendi de mundo [178]: omnes enim generatione pariter veniunt super terram, et morte ex ipsa discedunt. Magnitudo vero et parvitas, altitudo et humilitas, felicitas et infelicitas, quae veluti somnia sunt vigilantium, hominibus contingunt inter generationem et mortem; quin immo ab experientiâ sapientibus et insipientibus manifestum fit, nihil horum habere soliditatem.

Ne igitur amittatis propter caducam vitam aeternam felicitatem; nam etsi Christus exemplo cameli in acûs foramine difficile dixerit, divites in regnum coelorum ingredi [179]; si tamen divitiis vestris juxta Dei voluntatem utamini, istud difficile fiet vobis facile. Etenim vel Abraham dives erat, et non tantum dignus effectus fuit, qui in regnum (*coelorum*) intraret, verum et ipsius sinus regnum Dei factus est, omniumque justorum requies appellatus. Similiter et Job, omnesque divites justi, de quibus dictum est a Domino: *Videbitis Abraham et Isaac et Jacob, et omnes justos in regno Dei* [180]. Ita et vestrum erit, si juxta illorum exemplum in viis justitiae ambulaveritis. Illi neminem fraudabant, neminem vexabant, nullius bona usurpabant, nemini injuriam aut fraudem irrogabant; quin immo ex justis suis laboribus esurientes pascebant, nudos operiebant, peregrinos excipiebant, egentium inopiam explebant, afflictos adjuvabant, infirmos consolabantur, pauperem vero ac inopem haud affligebant, sed etiam eos ab ipsorum oppressoribus liberabant. Et quemadmodum

կամ լինէին, և տկարաց զօրացուցիչ, զաղքատս և զտնանկս ոչ միայն ինքեանք ոչ նեղէին, այլ և փըրկէին 'ի նեղչաց իւրեանց։ Եւ որպէս ոչ եղև նոցա մարմնաւոր փարթամութիւնն արգել և խափան ժառանգելոյ զարքայութիւնն երկնից, նոյնպէս և ոչ ձեզ լինիցի պատճառ չարեաց մեծութիւնդ, և թէ կամիցիք արդարութեամբ վարել զդա, որպէս և նոքա. այլ մանաւանդ բարւոյ առիթ լինի՝ ըստ իմաստնոյն, զի ասէ, թէ “ Փրկանք առն մեծութիւն իւր ”։

Նաև այն՝ որ փոխանակ զիւրն տալոյ կարօտելոց՝ զնոցայն յափշտակէ, և կողոպտէ զնոսա. և փոխանակ հիւրընկալ լինելոյ և հանգուցիչ աշխատելոց 'ի ճանապարհի՝ գողակից լինի գողոց, և դարանակալ 'ի ճանապարհի այնոցիկ՝ որք անմեղութեամբ գնան ընդ ուղիղ ճանապարհս իւրեանց, և զտուն իւր յանիրաւ ստացուածոց անտի լնու, և մեծանալ կարծէ. Թողից ասել զանթող լին յանցանք, որք ոչ միայն զինչսն յափշտակեն, այլ և զարիւնն անմեղաց հեղուն, զի մի՛ դատապարտ լինիցին յափըշտակողաց ընչից իւրեանց, և զայն ոչ ածեն զմտաւ՝ եթէ այլ դատաւոր կայ գիտող ամենայնի, յորմէ ոչ կարեն թաքուցանել զգաղտնիս չարեաց իւրեանց, յաղագս այսպիսեաց մեծատանց՝ յիրաւի հրամայէ Տէրն դժուարաւ մտանել յարքայութիւն երկնից. որոց ոչ արքայութիւնն է օթևան, այլ հուր գեհեննին. և սատանայական որդն անքուն, և տարտարոսն յաւիտենական։ Նաև այս յիրաւի. զի թէ որք յիւրեանց արդար ընչիցն ոչ կերակրեն զաղքատս քաղցեալս, և ոչ զգեցուցանեն զմերկս, և ոչ ժողովեն զօտարս, լսելոց են 'ի Տեառնէ յաւուր դատաստանին՝ եթէ “ Երթայք յինէն, անիծեալք, 'ի հուրն յաւիտենից ”. ապա որք աղքատին առաւել քաղցի լինին պատճառ, և տառապելոյն՝ մերկութեան, և օտարին՝ կորստեան ընչիցն և անձինն, և փոխանակ զբանտարկեալսն տեսանելոյ և մխիթարելոյ բանիւ և արդեամբք, արձակելոց անմեղաց՝ բանտից և կապանաց լինին առիթ, ո՞ւր արդեօք իմանի տեղի և չափ տանջանաց այնպիսեացն, և-

illis temporales divitiae impedimento et obstaculo non fuerunt ad coelorum regnum possidendum; ita nec vobis mali causa erunt divitiae, si, illorum more, recte iisdem uti velitis, immo, juxta Sapientem, boni causa erunt: dicit enim: *Redemptio viri divitiae suae*[181].

Qui autem, potiusquam suum indigentibus tribuat, eorum usurpat, eosdemque expoliat; et potiusquam hospitalis sit, atque ex itinere defatigatorum refocillator, latronibus fit socius, et in itinere insidiator incedentibus innocenter per viam, domumque suam injustis possessionibus implet, ac locupletatum sese existimat: (taceo scelus veniam non merens eorum, qui non solum bona rapiunt, sed et innocentium sanguinem effundunt, ne ab iis accusentur ceu bonorum suorum raptores, haud cogitantes, alterum esse judicem omnia cognoscentem, cui propria occulta crimina nequeunt abscondere): pro hujusmodi divitibus jure meritoque profert Christus difficiliter intrare (*posse*) in regnum coelorum; quibus non coelum, sed ignis inferorum est habitatio, et vigilantes vermes aeternusque tartarus hospitium. Et hoc jure quidem: ii enim, qui ex justis suis substantiis esurientes non cibant, nudos non operiunt, et hospites non colligunt, audituri sunt a Christo in die judicii: *Discedite a me maledicti, in ignem aeternum*[182]. Illi igitur, qui potius causa sunt famis egentibus, nuditatis afflictis, aliisque bonorum ac personae amissionis; et potiusquam in carcere inclusos visitent eosque verbo et opere consolentur, captivitatis et compedum causa fiunt liberis innocentibus; ubinam pro iisdem locus erit, et quaenam tormentorum mensura, nisi *cum diabolo et angelis ejus*, quorum voluntatem perfecere?

թէ ոչ ընդ սատանայի և հրեշտակաց նորա, զորոց և զկամսն կատարեցին ։

Վասն որոյ աղաչեմ 'ի քեզ լինել ամենեցուն ձեզ 'ի կորստական գործոցս յայսցանէ ։ Եւ մի ոք պատճառեսցէ զպատճառս մեղաց ասելով զի եթէ ոչ զրկեմք, և ոչ յափշտակեմք, զիշխանութի մեր ոչ կարեմք հաստատուն ունել ։ Եւ առ այս' առաջին զայս ասեմք, զի թէ անկարելի էր որոց զիշխանութիս ունին' հաճոյ լինել ա̃յ, ապա զիարդ բազումք 'ի թագաւորաց և յիշխանաց գովելիք եղեն ա̃յ և մարդկան, որք և յիշատակին 'ի գիրս սուրբս ։ Դարձեալ, թէ և անհնարելի էր' ըստ ասելոյ ձեր' առանց զրկանաց իշխանութիւն վարել, ապա որ իմաստունն է' փախչել արժան էր յանցաւոր իշխանութենէն, և ոչ վասն այնորիկ' անանց տանջանօք ընդ սատանայի տանջել ։ Բայց ոչ է անհնարին առանց անիրաւութե վարել զիշխանութիւն, այլ դիւրին և հեշտալի է, որք սիրեն և կամին. և մեք վկայեմք առաջի ա̃յ, և երաշխաւոր լինիմք ամենեցուն ։ Զի եթէ ոք զտուն իւր մաքրեսցէ 'ի զրկանաց, և զիրաւամբք ստացուածս միայն ժողովեսցէ անդ, թէ և սակաւ թուի թէ իցէ, առաւել շահեկան լինիցի և պատճառ հարստութե, քան զբազումս անիրաւաբար ստացեալս ։ Եւ զայս իմաստունն Սողոմոն յայտ արարեալ ասէ, թէ « Անէծք տեառն 'ի տունս ամբարշտաց, յարկք արդարոց օրհնին »։ Քանզի սակաւ ինչ անիրաւն' ըզբազում իրաւամբք ստացեալսն նման հրոյ կիզէ և ապականէ, զի անիծիւք և դառնութեամբ է ժողովուածն անիրաւին 'ի զրկելոց անտի, և ընդ աղքատացն անիծից և ա̃յ անէծքն մտանեն 'ի տունս զրկողաց ։ Իսկ տուն արդարոյն, զի սուրբ է 'ի զըրկանաց, և կերակրիչ է քաղցելոց, ընդ օրհնութիս աղքատացն և ա̃յ օրհնութիւնն մտեալ 'ի ծածուկ և անյայտ' զսակաւն բազմացուցանէ, որպէս զսարեփթացի այրւոյն, և զսոմնացւոյն, և զորս տէրն կերակրեաց յանապատին ։

Եւ մի ոք յանմտաց և 'ի մարմնասիրաց զբազում ինչս տեսանելով զրկողաց և ամբարշտաց, և զսա-

